Թիւնը պիտի անհետանայ, օտարականներու իրաւական վիճակին սահմանումով եւ արհեստակցական կարգապահութեամբ :

ԷՌԻՕ — Անշուշտ անթոյլատրելի է որ մարդիկ Ֆրանսա փոխադրուին իբրեւ արջառ: Ուրեմն, կեդրոնացումը անհրաժեշտ է: Գալով հպատակութեան, պարագան նոյնն է :Ֆրանսա չի կրնար թոյլատրել որ առաւելութիւններ շնորհուին այնպիսի քաղաքացիներու որոնք որ եւ է յանձնառութենէ ազատ են իրեն հանդէպ: Ես կուսակից եմ ոչ միայն հպատակութիւն շնորհելու աւելի բազմաթիւ օտարականներու, այլեւ հպատակութեան ստացումը դիւրէ մեքենական դարձնելու բոլոր բարեկիրթ օտար աշխատաւորներու համար որոնք զաւակ ունեցած են մեր երկրին մէջ: Այստեղ ալ միայն առանձին նախարարութիւն մը կրնայ վարել գործը :

## ԻՏԱԼԻԱ ԴԻՒՐՈՒԹԻՒՆՆԵՐ Կ'ԸՆԾԱՅԷ ՈՐՊԷՍԶԻ ԶԱՒԱԿՆԵՐ ԱՐՏԱԴՐԵՆ

Իտալական կառավարութիւնը որոշեց վարկ բանալ այն երիտասարդներուն որոնք ամուսնանալ կ'ուզեն, բայց նիւթական միջոցներ չունին: Արդէն իսկ հրատարակուած է հրամանագիր մը, որով 50 եւ 150 տոլար (1000 — 3000 լիր) փոխ պիտի տրուի նորապսակներու: Եթէ երիտասարդ ամոլը զաւակ մը ունենայ առաջին տարին, 10 առ հարիւր պիտի կրճատուի փոխառութեան գումարը: Յետոյ, ամէն անգամ որ զաւակ մը ծնի, 20, 30, 40 առ հարիւր զեղչ պիտի ըլլայ յաջորդաբար, այնպէս որ հարս-փեսայ կրնան պարտքէ ազատիլ չորրորդ զաւակով մը:Այս վարկը պիտի բացուի անոնց որ 26տարեկանէն վար են, բայց հրամանագիրը ուրիշ առաւելութիւններ ալ կը տրամադրէ բազմածին ընտանիքներու, զանոնք մասամբ կամ ամբողջովին ազատ կացուցանելով զանազան տուրքերէ: Որքան բազմանդամ ըլլայ ընտանիքը, այնքան պակաս տուրք պիտի վճարէ: Կառավարական պաշտօնեաները թոշակի յաւելում պիտի ստանան ամէն նոր զաւկի համար, պետական բնակարաններ պիտի տրամադրուին 8 — 10 հոգինոց ընտանիքներու եւն.:

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՎԵՑ ՀԱՅԵՐ եւ չորս Ֆրանսացիներ կէս միլիոն փրանք շահած են Վիէնի մէջ, ազգ. պարգեւախաղի 4րդ վիճակահանութենէն :

ՊՈՒՆԷՆՈՍ ԱՅՐԷՍԻ հիթլէրականներու պետը, Եագէֆ Ռիտէլ, սպաննուեցաւ վիճաբանութեան մը ընթացքին :

ԱՆԳԼԻՈՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ԹԱԳԱԴՐՈՒԹԵԱՆ «փորձ»ը պիտի կատարուի այսօր, Լոնտոնի մէջ: Թագադրութեան առթիւ ծրագրուած բոլոր արարողութիւնները պիտի փորձուին, առտուան ժամը 6.30էն սկսեալ, արքայական պալատէն մինչեւ Ուէթմինսթրրի աբբայարանը:

ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՍՊԱՅԱԿՈՅՏԸ 2000 մարքի դրական մրցանակ մը հաստատեց,— «Խաղաղութիւնը՝ դրօշներու շուքին տակ»:

139 ՄԱՐՏԱՆԱՒԵՐ, 447 օդանաւեր եւ 40,000 սպաներ ու նաւազներ կը մասնակցին Մ. Նահանգներու գարնանային ռազմափորձերուն, որ սկսան ուրբաթ օր, Խաղաղականի մէջ, 2000 մղոն տարածութեան մը վրայ: Ռազմափորձերը պիտի տեւեն երկու շաբաթ :

## Հ. Յ. Դ.

### Փարիզ

ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ-ՔՈԼՈՆՊԻ Արամ Խնթակոմիտէի ընկերական ընդհ. ժողովը 21 Ապրիլ, չորեքշաբթի երեկոյ ժամը 9ին, սովորական ճաւաքատեղին: Օրակարգ՝ 1. վարչական կազմի լրացում. 2. դասախօսութիւն ընկ. ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆԷ:

ՓԱՐԻԶԻ «Հրազդան» խումբի անդամական ընդհ. ժողովը այս չորեքշաբթի ժամը 9ին, 6 Avenue d'Italieի սրճարանին վերնայարկը, մէթրօ փլաս տ'Իթալի:

ՓԱՐԻԶԻ «Ռոստոմ» խումբի ժողովը 21 Ապրիլ, չորեքշաբթի երեկոյ ժամը 8.30ին, 131 Fbg. du Temple, մէթրօ Պէլվիլ, կարեւոր օրակարգ:



## ԱՅՍ ԱՆԾԱՆՕԹ ԶԻՆՈՒՈՐԻՆ

Համախմբումները արգիլուած ըլլալով, Զ. Ո. Միութեան Փարիզի Մասնաճիւղը յարմար դատեց հրաժարիլ, այս տարի, Անծանօթ Զինուորի շիրմին աւանդական այցէն :

Հ. Մ. Ը. Մ.ի սկաուտներէն եւ Հայ Արիներէն կը խնդրուի նկատի ունենալ այս պարագան, բայց չմոռնալ իրենց մասնակցութիւնը բերել, այս երեկոյ, սգահանդէսին:

Զ. Ո. ՄԻՈՒԹԻՒՆ



Պ. ԼԵՒՈՆ ՏՕՆԻԿԵԱՆԻ տան փողոցի նոր անունն է՝ 52 Rue Gustave Courbet. Bagneux, Seine.


Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme, PARIS (13)

